Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 23 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1952

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿՊ Կենտկոմ Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78*

---

# ՀԻՆԳԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԸ ՆՈՐ ԽՈՇՈՐ ՔԱՅԼ Է ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

*Սովետական Միության ժողովուրդները մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում են ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները և ամենուրեք մտնում են սոցիալիստական մրցության մեջ, ստանձնում են նորանոր պարտավորություններ՝ մեր ժողովրդի կյանքում կարևոր պատմական իրադարձություն հանդիսացող 19-րդ համագումարի որոշումները անթերի կենսագործելու համար։*

*Հինգերորդ հնգամյա պլանը մի նոր, խոշոր առաջընթաց քայլ է սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու ճանապարհին, այն պատմական խնդիրների կենսագործման ճանապարհին, որ առաջադրել է ընկեր Ստալինը «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» կլասիկ աշխատության մեջ։*

Կոմունիզմի շինարարության գործում առանձնահատուկ նշանակություն ունի ընկեր Ստալինի կողմից հայտնագործված սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքը, այն է «...Ամբողջ հասարակության նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարման ապահովում՝ բարձրագույն տեխնիկայի բազայի վրա սոցիալիստական արտադրության անընդհատ աճման ու կատարելագործման միջոցով»:

Պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի անխախտ գործողության ամենավառ վկայությունն են հանդիսանում:

«Ներկա (հինգերորդ) հնգամյա պլանը,— նշվում է հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ 19-րդ համագումարի դիրեկտիվներում,— նորից ամբողջ աշխարհի առջև ցուցադրում է սոցիալիզմի կենսական մեծ ուժը, տնտեսության սոցիալիստական սիստեմի արմատական առավելությունները կապիտալիստական սիստեմի նկատմամբ: Այդ հնգամյա պլանը տնտեսական և կուլտուրական խաղաղ շինարարության պլան է: Նա կնպաստի Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսական համագործակցության հետագա ամրապնդ-



ման ու ընդլայնմանը և տնտեսական հարաբերությունների զարգացմանը բոլոր այն երկրների հետ, որոնք ցանկանում են զարգացնել առևտուրը իրավահավասարության և փոխադարձ շահավետության սկզբունքներով»:

Սովետական Միության ժողովուրդները կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ պատվով կկատարեն կոմունիզմի խաղաղ շինարարության այդ պլանը:

Սովետական Հայրենիքի տնտեսության հզորության հիմքը սոցիալիստական ինդուստրիան է և ամենից առաջ՝ ամբողջ ծանր արդյունաբերությունը: Դա այն է, որ առաջ է մղում ամբողջ ժողովրդական տնտեսությունը: Ինդուստրացման սովետական փորձված քաղաքականությունը հանդիսանում է նաև նոր հնգամյա պլանի կենսագործման կարևորագույն հիմքը:

Թողարկվող արդյունաբերության արտադրանքի քանակը նոր հնգամյակի վերջին տարում, 1950 թվականի համեմատությամբ, աճելու է 70 տոկոսով, արտադրանքի տարեկան միջին աճը կազմելու է մոտավորապես 12 տոկոս:

Հետագա տեխնիկական պրոգրեսի ապահովման գործում առաջավոր դեր է պատկա-

նում սովետական մեքենաշինությանը: Նախատեսվում է հնգամյակի ընթացքում ավելացնել մեքենաշինության և մետաղամշակման ձեռնարկությունների արտադրանքը՝ մոտավորապես երկու անգամ: Ժողովրդական տնտեսության հագեցումը նորագույն մեքենաներով՝ հնարավորություն կտա ամենալայն չափով մեքենայացնել աշխատանքը, բարձրացնել նրա տեխնիկական զինվածությունը, և դրանով իսկ մի նոր աստիճանի հասցնել աշխատանքի արտադրողականությունը: Մեքենաշինության բնագավառում կարևոր խնդիր է հանդիսանալու էլեկտրակայանները, սև և գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունները, նավթի վերամշակման և հեղուկ վառելանյութի ձեռնարկությունների շինարարությունը սարքավորումով լիովին ապահովելը:

Հինգերորդ հնգամյակում սահմանված է էլեկտրիֆիկացիայի զարգացման ավելի բարձր տեմպ: Ժողովրդական տնտեսության աճող պահանջները և բնակչության կենցաղային կարիքները ավելի լրիվ բավարարելու համար էլեկտրաէներգիայի ընդհանուր կարողությունը ավելանալու է կրկնակի չափով:

Հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվները նախատեսում են արդյունաբերության



նոր ճյուղերի զարգացումը: Այդպիսի ճյուղեր են՝ գազի արդյունաբերությունը, ածխի և թերթաքարերի վերամշակումը գազի համար, ածխի հարստացումը և բրիկետավորումը, անտառանյութի հայթայթման ու փոխադրման մեքենայացված արդյունաբերությունը, խոշոր անտառաքիմիական արդյունաբերությունը և այլն:

Նոր հնգամյակով նախատեսվում է լայն սպառման ապրանքների արտադրության զգալի աճ: Թեթև և սննդի արդյունաբերության արտադրանքի թողարկումն աճելու է առնվազն 70 տոկոսով: Արդյունաբերության բնագավառում կատարվող կապիտալ ներդրումները հնգամյակի ընթացքում՝ 1946—1950 թվականների համապատասխան ցուցանիշների համեմատությամբ ավելանալու են 2 անգամ:

Հինգերորդ հնգամյա պլանի դիրեկտիվներում մեծ տեղ է հատկացված գյուղատնտեսության հետագա վերելքին: Գյուղատնտեսության բնագավառում այսուհետև ևս գլխավոր խնդիրն է՝ բարձրացնել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, ավելացնել հանրային անասունների գլխաքանակը, ավելացնել հողագործությունից և անասնապահությունից

ստացվող համախառն և ապրանքային արտադրանքը ,կոլտնտեսությունները, սովխոզները և ՄՏԿ-ներն ամրապնդել կազմակերպչորեն և տնտեսապես։

Մեծ չափերով ընդարձակվելու են ցանքատարածությունները, արտադրության մեջ նոր, ավելի բերքատու սորտեր են արմատավորվելու, բարձրացվելու է գյուղատնտեսության մեքենայացումն ու քիմիացումը։

Հսկայական աշխատանք է կատարվելու մելիորացիայի և իրրիգացիայի ուղղությամբ։ Ոռոգելի հողերի տարածությունը հնգամյակում ավելանալու է 30—35 տոկոսով։ Այդ ուղղությամբ առանձնապես մեծ աշխատանք է կատարվելու Կույբիշևի հիդրոէլեկտրակայանի, Վ. Ի. Լենինի անվան Վոլգա-Դոն նավարկելի ջրանցքի, Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանի, Գլխավոր-Թուրքմենական, Հարավ-Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքների շրջաններում։ Ժողովրդական տնտեսության արագ զարգացման շնորհիվ անշեղորեն աճելու է մեր հայրենիքի աշխատավորների բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։

Մեր երկրի աշխատավորության նյութական բարեկեցության վերելքի ամենից ավելի փայլուն ցուցանիշն է ազգային եկամտի



անշեղ աճը, իսկ որքան շատ է ազգային եկամուտը, այնքան մեծ է սոցիալիստական պետության տնտեսական հզորությունը, այնքան բարձր է աշխատավորության հասարակական և անձնական բարեկեցությունը։ Նոր հնգամյակում նախատեսվում է 60 տոկոսով ազգային եկամտի աճ, բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձի բարձրացում, հաշվի առնելով մանրածախ գների իջեցումը, առնվազն 35 տոկոսով։

Ի հակադրություն կապիտալիստական երկրների, որտեղ ազգային եկամտի մեծ բաժինը պատկանում է մի բուռ կապիտալիստների, սոցիալիզմի երկրում այն ամբողջությամբ պատկանում է ժողովրդին և օգտագործվում է բացառապես նրա շահերի համար։

Սպառազինությունների կատաղի մրցավազքը, ժողովուրդների նկատմամբ նորանոր ագրեսիաների կազմակերպումը էլ ավելի անտանելի է դարձնում աշխատավորների դրությունը կապիտալի երկրներում։

ՍՍՌ Միությունը, որտեղ գործում է աշխատավորության բարեկեցության անշեղ բարձրացման օրենքը, անընդհատ բարելավվում են ժողովրդի նյութական և տնտեսական պայմանները։

Նոր հնգամյակի կենսագործմամբ էլ ավելի կբարելավվեն սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական սպասարկման պայմանները։ Հինգերորդ հնգամյակում զգալիորեն ընդարձակվելու է գիտության և կուլտուրայի, առողջապահության և լուսավորության հիմնարկների ցանցը։ Մեծ ուշադրություն է նվիրվում ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր ճյուղերի համար որակյալ կադրեր պատրաստելու գործին, աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը և նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացմանը։

Այսպիսով, նոր հնգամյա պլանը ընդգրկում է համարակական վերարտադրությունը՝ իր բոլոր կողմերով։ Նոր հնգամյա պլանը ՍՍՌՄ-ում ընդլայնված վերարտադրության ծրագիր է։

Նոր հնգամյա պլանը սովետական բոլոր մարդկանց համար ներկայացնում է մեր երկրի հզորության ամրապնդման համար մղվող ամենօրյա պայքարի, խաղաղ ստեղծագործական աշխատանքի ծրագիրը։

Կոմունիստական շինարարության ստալինյան պլանի առաջնահերթ կարևորագույն խնդիրը, որով պայմանավորված է մյուս



խնդիրների կատարումը, ՍՍՌՄ հիմնական տնտեսական պրոբլեմի լուծումն է, որը պետք է ստեղծի կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա և ապահովի կապիտալիստական գլխավոր երկրներից անցնելը նաև տնտեսական տեսակետից, այսինքն բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի չափի մակարդակով։

Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ այդ խնդրի կատարումը պահանջում է արտադրողական ուժերի հզոր աճ, տեխնիկական պրոգրես ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, արտադրության պրոցեսների մեքենայացում և ավտոմատիզացիա, տեխնիկական անհրաժեշտ գիտելիքներով զինված կադրերի բազմամիլիոն բանակ։

Մեր երկրում կոմունիզմի կառուցման ստալինյան պլանի անբաժանելի մասն է կազմում նոր հնգամյակը, որի կենսագործման շնորհիվ սովետական ժողովուրդը կըհասնի արտադրողական ուժերի նոր, աննախընթաց վերելքի և դրանով իսկ առավել ևս կամրապնդի սովետական պետության հզորությունը։

# ԻՆՔՆԱՐԺԵՔԻ ԻՋԵՑՈՒՄԸ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐՆ Է

*Արտադրանքի ինքնարժեքի իջեցումը սոցիալիստական ձեռնարկության տնտեսական գործունեության կարևոր ցուցանիշներից մեկն է։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարը ՍՍՌՄ զարգացման հինգերորդ հնգամյակի իր դիրեկտիվներում առաջարկում է ապահովել նյութական միջոցների զգալի տնտեսում, բարձրացնել ձեռնարկության շահութաբերությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը։*

*Ընկ. Մալենկովը պարտիայի 19-րդ համագումարում տված իր զեկուցման մեջ նշեց, որ «Պետք է արմատախիլ անել բոլոր շռայլումները նյութական, աշխատանքային ու դրամական ռեսուրսների ծախսման գործում և սիստեմատիկորեն ապահովել արտադրանքի ինքնարժեքի իջեցման առաջա-*



*դրանքների կատարումն ու գերակատարումը»։*

*Արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու հարցում վճռական պայման է հանդիսանում ներքին միջոցների մոբիլիզացումը, որը միլիոնավոր աշխատավորների առօրյա գործըն է։*

*Թե ինչպիսի նշանակություն են ձեռք բերում նոր հնգամյակում որակական ցուցանիշները ժողովրդական տնտեսությունում, երևում է թեկուզ այն բանից, որ 1951—1955 թվերի ընթացքում պետական կապիտալ ներդրումների 90 տոկոսով աճի պայմաններում պետական հատկացումները, համեմատած չորրորդ հնգամյակի հետ, ավելանում են 60 տոկոսով, իսկ մնացած 30 տոկոսը պետք է ծածկվի ի հաշիվ շինարարության ինքնարժեքի իջեցման։*

*Պարտիայի 19-րդ համագումարը իր դիրեկտիվներում պահանջում է հինգերորդ հնգամյակում բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ 50 տոկոսով, շինարարությունում՝ 55 տոկոսով, գյուղատնտեսության մեջ՝ 40 տոկոսով։ Արդյունաբերական արտադրանքի թողարկման ինքնարժեքն իջեցնել մոտավո-*

րապես 25 տոկոսով, շինարարական աշխա-
տանքի ինքնարժեքն իջեցնել առնվազն 20
տոկոսով, մեքենատրակտորային կայանների
տրակտորային աշխատանքների ինքնարժե-
քը՝ մոտավորապես մինչև 25 տոկոսով, եր-
կաթուղային փոխադրումների ինքնարժեքը՝
15 տոկոսով և մանրածախ առևտրի շրջա-
նառության ծախսերը կրճատել 23 տոկո-
սով։ Խիստ կերպով պետք է կրճատվեն
արդյունաբերությանը մատակարարող կազ-
մակերպությունների վերադիր ծախսերը։

Նոր հնգամյակի այդ առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար պահանջվում է տնտեսական հաշվարկի հետագա կիրառումն ու ամրապնդումը՝ որպես սոցիալիստական տնտեսության ղեկավարման մեթոդ։ Տնտեսական հաշվարկն ուժեղացնում է ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների գործունեության վերահսկողությունը ռուբլու միջոցով և սովորեցնում է խնայողության ռեժիմը։

Սովետական պետության մեծ հիմնադիրներ Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը բազմիցս ընդգծել են հաշվառումն ու վերահսկողությունն ամրապնդելու նպատակով տնտեսական հաշվարկի կիրառման անհրաժեշտությունը որպես կարևորագույն պայման-



ներից մեկը՝ սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման, ներարդյունաբերական կուտակումների ավելացման, արտադրությունում եղած թերությունների վերացման և արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի սիստեմատիկ բարելավման համար։

Երևանի Ավտոդետալ գործարանի կոլեկտիվը խորապես գիտակցելով արտադրությունում տնտհաշվարկ կիրառելու անհրաժեշտությունը, այդ աշխատանքին ձեռնամուխ եղավ դեռ 1950 թվականին։ Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի տնտեսագիտական սեկտորի հետ համագործակցելով, մեզ հաջողվեց 1951 թվականի սկզբից տնտհաշվարկի փոխադրել գործարանի № 1 մեխանիկական ցեխը։ Դրանով իսկ ավտոդետալ գործարանը նոր հնգամյակն սկսեց տնտեսական հաշվարկը գիտական հիմունքներով արմատավորելով։ 1952 թվականի ընթացքում տնտեսական հաշվարկը կիրառվեց նաև № 3 մեխանիկական և թերմիկական ցեխերում։ Տնտեսական հաշվարկն այժմ մտցվում է № 2 մեխանիկական ցեխում և կիրառվելու է նաև գործարանի մյուս ցեխերում։

Ավտոդետալ գործարանը այս տարվա անցած 11 ամսվա ընթացքում զգալի հաջողու-

թյուններ է ձեռք բերել ավտոմոբիլային ու տրակտորային դետալների ինքնարժեքի իջեցման ասպարեզում։ Բավական է ասել, որ միայն նոյեմբեր ամսում ինքնարժեքն իջեցվել է 24,2 տոկոսով՝ պլանով նախատեսված 15,6 տոկոսի փոխարեն։ Գործարանը 1952 թվականի ընթացքում ունեցել է ավելի քան մեկ միլիոն ռուբլու արտապլանային կուտակում։

Ինքնարժեքի իջեցման գործում կարևոր դեր է խաղում մետաղի խնայողությունը։ ԶԻՄ—5 միջակա լիսեռը առաջ պատրաստվում էր 10 կգ. կռածոյից և այդ լիսեռի վրա երկու ատամնանիվների պսակիկները մեկ տեղ էին պատրաստվում։ Լիսեռը պատրաստելիս, եթե խոտանվում էր պսակիկներից որևէ մեկը, ամբողջ լիսեռը դուրս էր գալիս արտադրությունից։ Մենք մշակեցինք հանովի պսակիկներով դետալ, որի համար գնում է 8,85 կգ. պողպատ։ Այսպիսով, հեշտանում է այդ դետալի ոչ միայն պատրաստելը, այլև շահագործելու ընթացքում պսակիկներից որևէ մեկը մաշվելիս, այն փոխարինվում է նորով և խնայվում է պողպատի գերակշռող մասը։

Նման եղանակով իջեցվեց ԳԱԶ—ՄՄ և ԳԱԶ—51 ավտոմոբիլների միջակա լիսեռի ատամնանիվների բլոկի ինքնարժեքը։



Գործարանի № 1 մեխանիկական ցեխի 5-րդ աշխատամասում, սկսած 1948 թվականից, արտադրվում է ԳԱԶ—ՄՄ ավտոմոբիլների ծնկաձև լիսեռի ատամնանիվ։ Այդ ատամնանիվը պատրաստելու տեխնոլոգիան պահանջում է հարահոս արտադրանքի գիծ՝ բաղկացած 5 հաստոցներից, այն է 1 խառատային հաստոց, 1 ձգոցային հաստոց, 2 ռևոլվերային հաստոց և 1 ֆրեզահաստոց։ Սկզբում այս 5 հաստոցների վրա 3 հերթափոխում աշխատում էին 15 բանվորներ, 3 լարողներ և 1 վարպետ, ընդամենը 19 մարդ և տալիս էին տարեկան 30 հազար դետալ։ 1950 թվականին աշխատողների թիվը կրճատվեց, թողնելով 10 մարդ։ Երիտասարդ բանվորներից մեկը, Կարպիս Ղազանչյանը, մի շարք նորարարություններ մտցրեց հաստոցների օգտագործման ասպարեզում։ Նրա կիրառած նորարարություններն այն արդյունքն ունեցան, որ այժմ 5 հաստոցների վրա աշխատում է միայն ինքը։ Այս տարի նա տալու է 40 հազար դետալ։ Անցյալ տարվա համեմատությամբ այդ դետալի ինքնարժեքն իջել է 1 ռ. 44 կոպեկով։ Վարպետ Ժիրայր Բունարջյանի հարահոս արտադրանքի գծում արտադրվում են ԳԱԶ—ՄՄ շարժիչի բաշխիչ ատամնանիվներ։ Այդ ատամ-

նանիվներն առաջ պատրաստվում էին տեքստոլիտից։ Մեր գործարանում առաջարկվեց այդ ատամնանիվները պատրաստել ալյումինից։ Ալյումինից պատրաստված ատամնանիվի ինքնարժեքը իջավ ավելի քան չորս անգամ։ Բացի դրանից, այդ ատամնանիվներն ավելի դիմացկուն են։ Այսպես, օրինակ, եթե տեքստոլիտից պատրաստված ատամնանիվը կատարում էր 15—17 հազար կիլոմետր վազք, ապա ալյումինե ատամնանիվը կատարում է 65—100 հազար կիլոմետր վազք։ Գործարանի կոլեկտիվը դետալների կոնստրուկցիաները մշակելիս լուծում է ոչ միայն դետալի ինքնարժեքն իջեցնելու, այլև նրա դիմացկունությունը բարձրացնելու խնդիրները։

Գործարանի կոլեկտիվը ամենուրեք ձգտում է կիրառել նորագույն տեխնիկա, որը ոչ միայն իջեցնում է դետալի ինքնարժեքը, այլև թեթևացնում է աշխատանքի պայմանները։

Գործարանում 1952 թվականի երկրորդ եռամսյակից կիրառման մեջ մտցվեցին հաստոցների պնևմատիկ սեղմակային հարմարանքները, պատրոնները և այլ սարքեր, որոնք դուրս են մղում մինչև այդ ձեռքով, մկանային ուժով գործող հարմարանքներին։ Պնևմատիկայի կիրառումը բարձրացնում է



արտադրողականությունը 25 տոկոսով և հեշտացնում աշխատանքը։

Ավտոդետալ գործարանի սրընթացիկները մետաղը տաշելու, ֆրեզելու, թործելու, շեբերելու և հղկելու պրոցեսները արագացնելու ասպարեզում ոչ միայն ռեսպուբլիկայում, այլև Միությունում ընթանում են առաջավոր շարքերում։ Օրինակ, սրընթաց հղկելու ասպարեզում վայրկյանում 50 մետր արագությամբ հղկելու սիստեմը Ավտոդետալ գործարանը կիրառում է դեռ 1950 թվականից։ Մետաղաձողերից պատրաստուկներն առաջ կտրում էինք խառատային հաստոցների վրա, հետո անցանք կիսավտոմատ ռևոլվերային հաստոցների կիրառմանը, այդ նույնպես չբավարարեց մեր պահանջներին, պատրաստուկները կտրելու համար ինժեներատեխնիկական անձնակազմի և նորարար Միխայիլ Մալիշենկոյի համագործակցությամբ գործարանում ստեղծվեց շփող սկավառակով 2400 մետր րոպեում արագությամբ պատրաստուկները կտրելու հաստոց։ Այդ հաստոցը նույնպես չբավարարեց մեր պահանջներին և այժմ գործարանում աշխատում է մամուլ մկրատ, որն աշխատեցնում են նորարարներ Մ. Մաթևոսյանը և Ա. Հովհաննիսյանը։ Նրանք պատրաստուկների

*կտրելու արագությունն ավելացրին 5—6 անգամ, իսկ ինքնարժեքն իջեցրին ավելի քան 3 անգամ։*

*Ավտոդետալ գործարանի պարտիական կազմակերպության ագիտկոլեկտիվը լայնորեն ծավալելով ՍՄԿՊ 19-րդ համագումարի նյութերի և ընկեր Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» աշխատության մասսայականացումը, այն կապում են գործարանի առջև կանգնած կոնկրետ խնդիրների հետ, ցույց են տալիս հնարավորությունները և նշում միջոցառումներ առավել նպատակահարմար օգտագործելու արտադրական կարողությունները, ավելացնելու ձեռնարկության շահութաբերությունը և իջեցնելու արտադրվող դետալների ինքնարժեքը։*

*Ավտոդետալցիները ծավալել են գործարար սոցիալիստական մրցություն ժամկետից շուտ կատարելու գործարանի նոր հնգամյա պլանը։*

*ԱԼ. ՄԱՐՋԱՆՅԱՆ*
Տեխնիկական գիտությունների թեկնածու

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՀԵՏԱԳԱ ԱՃԸ ՍՍՌՄ-ՈՒՄ

## ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ

✪ *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարի ընդունած՝ նոր, հինգերորդ հնգամյա պլանի դիրեկտիվները նախատեսում են ժողովրդի նյութական բարեկեցության, կուլտուրական կյանքի մակարդակի հետագա աննախընթաց աճ։*

✪ *Պետական կապիտալ շինարարության ընդհանուր ծավալը նոր հնգամյակի ընթացքում, չորրորդ հնգամյակի համեմատությամբ, նախատեսվում է ավելացնել մոտավորապես 90 տոկոսով։*

✪ *Աշխատավորների կուլտուրական և կենցաղային պայմանների բարելավման գործում՝ առողջապահության, լուսավորության, գիտական և կուլտուր-լուսավորական հիմնարկների գծով պետական կապիտալ ներդրումները հինգերորդ հնգամյակում, չոր-*

րորդ հնգամյակի համեմատությամբ ավելացվելու են 50 տոկոսի չափով։

✪ Արդյունաբերության և գյուղատնտեսության աճից ելնելով, պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը կավելանա մոտավորապես 70 տոկոսով։

✪ Նոր հնգամյակում ՍՍՌՄ-ի ազգային եկամտի 60 տոկոսի ավելացմամբ, մասսայական սպառման առարկաների մանրածախ գների սիստեմատիկ իջեցմամբ, 35 տոկոսի չափով աճելու է աշխատավորների աշխատավարձը։ Սոցիալական ապահովագրության համար պետական հատկացումները կավելանան 30 տոկոսով։

Հողագործության և անասնապահության մթերքների ավելացումը կապահովի կոլտնտեսականների եկամուտների ավելացում (դրամական արտահայտությամբ)՝ առնվազն 40 տոկոսով։

✪ Նոր բնակելի շենքերի շինարարության ծրագրի իրագործումը, նախորդ հնգամյակի կապիտալ ներդրումների համեմատությամբ ավելացվելու է 50 տոկոսով։ Քաղաքներում և բանվորական ավաններում բնակելի շենքերի կառուցումը միայն պետական շինարարության գծով կկազմի 105 միլիոն քառակուսի մետր։

✪ Խոշոր ներդրումներ են կատարվելու աշխատավորների առողջապահության վիճակի բարելավման և հանգստի կազմակերպման ուղղությամբ։ Նոր Հնգամ-



յակում սանատորիաներում տեղերի թիվը ավելանալու է 15 տոկոսով, հանգստյան տներում՝ 30 տոկոսով, հիվանդանոցներում՝ 20 տոկոսով, մանկամսուրներում՝ 20 տոկոսով, մանկապարտեզներում՝ 40 տոկոսով։ Երկու և կես անգամ կավելանա դեղատնային և բժշկական սարքավորումների արտադրությունը։

✪ 1951 թվականին ժողովրդական լուսավորության հատկացվող գումարները գերազանցեցին 1940 թվականի հատկացումներին 2,5 անգամ։ ՍՍՌՄ-ում սովորողների թիվը ներկայումս կազմում է 57 միլիոն մարդ՝ 8 միլիոնով ավելի, քան 1940 թվականին։ Տեխնիկումներում և միջնակարգ մասնագիտական ուսումնարաններում սովորողների թիվը 1951 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ 40 տոկոսով, իսկ բարձրագույն ուսումնական հաստատություններում՝ 67 տոկոսով։ Ներկայումս բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողների թիվը կազմում է 5,5 միլիոն մարդ, որը 2,2 անգամ գերազանցում է 1940 թվականին ժողովրդական տնտեսության մեջ աշխատող մասնագետների թվից։

Նոր հնգամյակում նախատեսված է անցումը յոթնամյա կրթությունից ընդհանուր միջնակարգ կրթության ռեսպուբլիկաների մայրաքաղաքներում և խոշոր քաղաքներում։ Քաղաքներում և գյուղերում դպրոցների շինարարությունը ավելացվում է 70 տոկոսով։ Բարձ-

բագույն ուսումնական հաստատություններ ավարտած մասնագետների թիվը կավելանա 50 տոկոսի չափով։

✪ 1955 թվականին կինոսարքերի թիվը կավելանա 25 տոկոսով, մասսայական գրադարանների ցանցը՝ 30 տոկոսով, ակումբներինը՝ 15 տոկոսով։ Նախատեսվում է գեղարվեստական ու գիտական գրականության, դասագրքերի, ժուռնալների և թերթերի հրատարակման զգալի աճ։

✪ Աշխատավորության նյութական պայմանների բարելավման, բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձի աճի, գյուղացիների դրամական ու բնամթերային եկամուտների ավելացման գործում չափազանց մեծ նշանակություն ունի պարտիայի և սովետական կառավարության կողմից հետևողականորեն անցկացվող մասսայական սպառման ապրանքների գների իջեցման քաղաքականությունը։ Բանվորների և ծառայողների մեկ աշխատողին ընկնող ռեալ եկամուտները 1951 թվականին մոտավորապես 57 տոկոսով ավելի էին, քան 1940 թվականին, և գյուղացիների՝ մեկ աշխատողին ընկնող ռեալ եկամուտները ավելի էին մոտավորապես 60 տոկոսով։

✪ 1947 թվականի վերջերից մինչև 1952 թվականը հացի գները Սովետական Միությունում իջեցվեցին $2\frac{1}{2}$ անգամ, իսկ ԱՄՆ-ում այդ նույն ժամանակաշրջանում հացի գները ավելացվել են 28 տոկոսով, Անգլիայում՝ 90 տոկոսով, Ֆրանսիայում՝ ավելի քան 2 անգամ։ Եթե մսի գները այդ նույն ժամանա-



կաշրջանում ԱՄՆ-ում ավելացան 26 տոկոսով, Անգլիայում՝ 35 տոկոսով, Ֆրանսիայում՝ 88 տոկոսով, ապա Սովետական Միությունում մսի գները իջան ավելի քան երկու անգամ։

1951 թվականին, 1946 թվականի համեմատությամբ, Սովետական Միությունում մսի արտադրությունն ավելացավ 709 հազար տոննայով, իսկ Միացյալ Նահանգներում այդ ժամանակամիջոցում մսի արտադրությունն ընկավ 437 հազար տոննայով։

✪ 1951 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, Սովետական Միությունում յուղի արտադրությունն ավելացավ 132 հազար տոննայով, չհաշված տնային արտադրության յուղի զգալի քանակությունը։ Մինչդեռ այդ նույն ժամանակամիջոցում Միացյալ Նահանգներում կենդանական յուղի արտադրությունը կրճատվեց 281 հազար տոննայով։

Հինգերորդ հնգամյակի վերջում Սովետական Միությունում կենդանական յուղի արտադրությունը նախապատերազմյանի դիմաց կաճի 2,7 անգամ, խտացված և չոր կաթի թողարկումը՝ 5 անգամ, պանրինը՝ ավելի քան 3 անգամ, մարգարինինը՝ 3 անգամ։

✪ Հայրենական Մեծ պատերազմի տարիներին գերմանական օկուպացիայից մեծ չափով տուժեց շաքարի արդյունաբերությունը։ Սովետական Միությունում գործող 211 շաքարի գործարաններից 196 գործարան շարքից դուրս եկան, նրանց մի մասը կամ լրիվին կամ թե մասնակիորեն ավերվեց։ Շաքարի

թողարկումը 1943 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, նվազեց համարյա 20 անգամ։

Այժմ շաքարի արդյունաբերությունը վերականգնըված է։ Վերականգնվել են ոչ միայն ավերված գործարանները, այլև կառուցվել են նորերը։ Այս տարվա վերջում շաքարի արտադրությունը, 1940 թվականի համեմատությամբ, կգերազանցի ավելի քան 50 տոկոսով, իսկ հինգերորդ հնգամյակի վերջում, նախապատերազմյանի դիմաց, այն կաճի երկու անգամ։

✪ 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, Սովետական Միությունում ճակնդեղաշաքարի արտադրությունը ավելացավ 454 հազար տոննայով։ Մինչդեռ Ամերիկայի Միացյալ Նահանգներում այդ նույն ժամանակամիջոցում ճակնդեղաշաքարի արտադրությունը նվազեց 338 հազար տոննայով։

Սովետական Միությունում 1951 թվականին ավելի քան 40 տոկոսով շատ ճակնդեղաշաքար է արտադրըվել, քան ԱՄՆ-ում՝ ճակնդեղաշաքարն ու եղեգնաշաքարը միասին վերցրած։

1952 թվականին Սովետական Միությունում ավելի շատ ճակնդեղաշաքար է արտադրվում, քան այդպիսի շաքար է արտադրվել 1951 թվականին ԱՄՆ-ում, Ֆրանսիայում և Անգլիայում՝ միասին վերցրած։

✪ Հնգամյակի վերջում մեծ չափով կաճի ֆաբրիկային մթերքների՝ երշիկեղենի, սոսիսկիների, պաղ-



պաղակի, կատլետների, պելմենների, պատրաստի նախաճաշերի, կոնսերվացված սուպերի արտադրությունը։

✪ 1952 թվականի 3-րդ եռամսյակում շարունակվում էր սովետական առևտրի հետագա ծավալումը։ Պետական և կոոպերատիվ առևտրի գծով բնակչությանը վաճառված են 10 տոկոսով ավելի շատ ապրանքներ, քան 1951 թվականի 3-րդ եռամսյակում։ Սննդամթերքների վաճառքն ավելացել է հետևյալ չափերով. միս՝ 17 տոկոսով, ձկնամթերքներ՝ 20 տոկոսով, յուղ և մյուս ճարպեր՝ 25 տոկոսով, պանիր՝ 21 տոկոսով, ձու՝ 24 տոկոսով, շաքար՝ 31 տոկոսով, հրուշակեղեն 15 տոկոսով։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի կենսագործումը նյութական խոշոր հարստություն կստեղծի մեր երկրի աշխատավորության նյութական ու կուլտուրական անընդհատ աճող պահանջմունքները բավարարելու համար։

---

# ՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԴԻՐԵԿՏԻՎՆԵՐԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵԽԱՆԻԶԱՑԻԱՅԻ ՀԵՏԱԳԱ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՍԻՆ

*Պարտիայի, կառավարության և անձամբ ընկեր Ստալինի մշտական հոգատարության շնորհիվ տարեցտարի զարգանում է մեր գյուղատնտեսությունը՝ անընդհատ աճում է նրա նյութա-տեխնիկական բազան, ավելանում է համախառն արտադրանքը, ամրապնդվում է կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը։*

*«Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» իր կլասիկ աշխատության մեջ ընկեր Ստալինը մատնանշում է. «Մեզ բոլորիս ուրախացնում է մեր երկրի գյուղատնտեսական արտադրության վիթխարի աճումը հացահատիկի արտադրության, բամբակի, վուշի, ճակնդեղի արտադրության աճումը և այլն։ Ո՞րն է այդ աճման աղբյուրը։ Այդ աճման աղբյուրը ժամանակակից տեխնիկան է, ժամանակակից բազմաթիվ մեքե-*



*նաներն են, որոնք սպասարկում են արտադրության այդ բոլոր ճյուղերը։ Բանն այստեղ ոչ միայն տեխնիկան է առհասարակ, այլ այն, որ տեխնիկան չի կարող կանգնած մնալ մի տեղում, նա պետք է մշտապես կատարելագործվի, որ հին տեխնիկան պետք է հանվի շարքից և փոխարինվի նորով, իսկ նորը՝ նորագույնով։ Առանց դրան անհնարին է մեր սոցիալիստական հողագործության առաջընթացը, անհնարին է թե՛ մեծ բերքը, թե՛ գյուղատնտեսական մթերքների առատությունը»։*

*Մեր երկրի գյուղատնտեսությունը ամենախոշոր և ամենա-մեքենայացված գյուղատնտեսությունն է աշխարհում։ Նա զինված է ժամանակակից հզոր տեխնիկայով։ Մեքենատրակտորային և մյուս մասնագիտացված կայանների թիվը ՍՍՌՄ-ում հասել է 8939 միավորի։ ՄՏ կայանների պարկը համալրվել է և անընդհատ համալրվում է մեծ քանակությամբ հզոր թրթուրավոր տրակտորներով, ինքնագնաց կոմբայններով, ճակնդեղի կոմբայններով, բամբակահավաք և ժամանակակից այլ մեքենաներով։ ՄՏ կայանների և սովխոզների տրակտորային պարկի ընդհանուր կարողությունը, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ,*

ավելացել է 59 տոկոսով, կոմբայններինը՝ 51 տոկոսով: Միայն հետպատերազմյան շրջանում գյուղատնտեսությունն ստացել է ավելի քան 160 նոր տիպի ու մարկայի մեքենաներ: 1951 թվականին մեքենատրակտորային և մասնագիտացված կայանները կոլտնտեսություններում կատարում էին 170 տեսակի աշխատանք, 1949 թվականի 90 տեսակի դիմաց:

ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներում նախատեսված է գյուղատնտեսական արտադրանքի հետագա ավելացումն այնպիսի չափով, որն ապահովի սննդամթերքների ասպարեզում բնակչության և հումքի ասպարեզում թեթև արդյունաբերության հարաճուն պահանջները:

Գյուղատնտեսության հետագա վերելքի ասպարեզում պարտիայի 19-րդ համագումարի առաջադրած խնդիրների հաջող կատարումը պայմանավորված է մեքենատրակտորային և մեքենա-անասնաբուծական կայանների լավ աշխատանքով:

Պարտիայի 19-րդ համագումարին տված իր հաշվետու զեկուցման մեջ ընկ. Մալեն-



կովը մատնանշեց, որ անհրաժեշտ է «... ուժեղացնել մեքենատրակտորային կայանների կազմակերպող դերը կոլտնտեսություններում, բարձրացնել ՄՏ կայանների պատասխանատվությունը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու համախառն բերքի պլանների կատարման համար և անասնաբուծության զարգացման համար»:

Պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվներում նախատեսված է ավարտել հիմնական դաշտային աշխատանքների մեքենայացումը կոլտնտեսություններում, լայնորեն ծավալել անասնաբուծության, բանջարաբուծության, այգեգործության աշխատատար պրոցեսների, գյուղատնտեսական արտադրանքի փոխադրման, բեռնման ու բեռնաթափման, ճահճակալած հողերի ցամաքեցման և նոր հողերի յուրացման աշխատանքների մեքենայացումը:

Հինգերորդ հնգամյակում էլ ավելի է աճելու մեքենատրակտորային և մեքենա-անասնաբուծական կայանների, որպես կոլտնտեսային արտադրության առաջատար ուժի դերը՝ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության հետագա բարձրացման, կոլտնտե-

սությունների կազմակերպական-տնտեսական ամրապնդման, նրանց հանրային տնտեսության զարգացման գործում։

Մեքենայացման բարձր մակարդակը ձեռք է բերվելու տրակտորային պարկի հզորությունը մոտ 50 տոկոսով ավելացնելու և տրակտորների օրական արտադրողականությունը նույնպես մոտ 50 տոկոսով բարձրացնելու միջոցով։

Այդ բոլոր խնդիրների կատարումը պահանջում է զգալիորեն բարելավել մեքենատրակտորային և մասնագիտացված կայանների աշխատանքը։ Ամենից առաջ անհրաժեշտ է հասնել այն բանին, որպեսզի էլ ավելի լավ օգտագործվեն տրակտորներն ու գյուղատնտեսական մեքենաները, որպեսզի զգալիորեն կրճատվեն դաշտային աշխատանքների կատարման ժամկետները։ Այդ նշանակում է, որ պետք է վերացնել տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների պարապուրդները։

Մեքենատրակտորային պարկը անընդհատ նորացում, ժամանակակից տեխնիկայով հագեցվելու կապակցությամբ և ելնելով մեքենատրակտորային ու մասնագիտացված կայանների աշխատանքը բարելավելու անհրաժեշտությունից՝ լուրջ ուշադրություն



պետք է դարձնել մեխանիզատորների կադրերի պատրաստմանը, կայաններն ապահովելով այնպիսի որակյալ կադրերով, որոնք զինված լինեն ոչ միայն տեխնիկական, այլև ագրոտեխնիկական գիտելիքներով։

Գյուղատնտեսական արտադրության մեխանիզացման և էլեկտրիֆիկացման վիթխարի ծրագրի իրականացումը կնպաստի սոցիալիստական գյուղատնտեսության արտադրողական ուժերի էլ ավելի զարգացմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, հանրային հարստության անընդհատ ամրապնդմանն ու աճմանը և գյուղի աշխատավորների նյութական-կուլտուրական մակարդակի անընդհատ բարձրացմանը։

Ագիտատորների կարևորագույն խնդիրն է՝ ամենօրյա ագիտացիայի միջոցով ապահովել պարտիայի 19-րդ համագումարի որոշումների, ընկեր Ստալինի «Սոցիալիզմի տնտեսական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» աշխատության և համագումարում արտասանած ճառի խորն ուսումնասիրությունը բոլոր աշխատավորների կողմից։

Մեխանիզատորների մեջ կատարվող ամբողջ ագիտացիոն-մասսայական աշխատանքը պետք է բխի այդ մեծագույն փաստաթղթերից, այն սերտորեն կապելով ՄՏ կայանների և մասնագիտացված կայանների արտադրական կոնկրետ խնդիրների հետ։

Պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ագիտատորները պետք է լայնորեն ծավալեն և ավելի բարձր աստիճանի հասցնեն մեխանիզատորների ու կոլտնտեսականների սոցիալիստական մրցությունը՝ հաջողությամբ կատարելու այն խնդիրները, որ առաջադրել է պարտիայի 19-րդ համագումարը գյուղատնտեսության նոր հզոր վերելքի և ՄՏ կայանների ու մասնագիտացված կայանների աշխատանքի բարելավման ասպարեզում։

Ա. ԱՅՐՈՒՄՅԱՆ
Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԱՇԽԱՏԱՎՈՐ ՄԱՍՍԱՆԵՐԻ ԱՂՔԱՏԱՑՈՒՄԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ

Պատերազմի և սպառազինության մրցավազքի իմպերիալիստական քաղաքականությունը ամենաբարձր շահույթներ է բերում միլիարդատերերին ու միլիոնատերերին։ Այդ քաղաքականությունը կապիտալիստական երկրների բնակչության մեծամասնության համար քայքայում, աղքատություն և սով է նշանակում։

✪ ԱՄՆ-ի պրոգրեսիվ պարտիայի ներկայացուցիչներից մեկը՝ Վինսենտ Խոլլինենը հանդես գալով ռադիոյով, հայտարարել է, որ սպառազինությունների ծրագիրը ամերիկյան ժողովրդի վրա նստում է օրական 177 միլիոն դոլար։ ԱՄՆ-ի կառավարող շրջանները այդ գումարները դուրս են կորզում ամերիկյան աշխատավորների գրպանից։ Կորեայում պատերազմ սկսելուց հետո, նշել է Խոլլինե-

նը, Ամերիկայում պարենային ապրանքների գները բարձրացել են 30 տոկոսով։ Նույն այդ ժամանակամիջոցում հարկերն ավելացել են 74 տոկոսով։ Կորեայում պատերազմն սկսելու պահից ի վեր կապիտալիստական մոնոպոլիաները իրենց շահույթներն ավելացրել են տարեկան 16 միլիարդ դոլարով։

✪ Ամերիկյան էլեկտրիկ բանվորների պրոֆմիության «ՅՈՒԻ նյուս» թերթը վերջերս գրել է, թե ԱՄՆ-ում «ապրուստի գինը բարձրացել է չտեսնված չափով և ոչ մի թեթևացում չի նախատեսվում»։

✪ Ամերիկյան բանվոր Ջեյմս Դևիսը պրոֆմիութենական «Պակինհաուզ ուորկեր» թերթում գրում է. «Իմ երեխաներից երկուսը բոլորովին մսի համ չեն տեսել, իսկ երեքը այնքան քիչ են միս կերել, որ չեն հասկանում, թե իրականում ինչ է «միս» բառը»։

✪ Թե իրականում ինչ է իրենից ներկայացնում «ամերիկյան ապրելակերպը», պարզ կերպով երևում է «Ուորկեր» թերթում հրապարակված հետևյալ նամակից։ Նամակի հեղինակը գրում է.

«Ես բանվորուհի եմ և աշխատում եմ Հարավային Կարոլինայի գուլպայի ֆաբրիկայում։ Օրական պատրաստում եմ տղամարդու երեք զույգ գուլպա, որի դիմաց գր-



ոշներ եմ ստանում։ Մեքենաները, որ բերված են Հյուսիսից, հնացած են և շուտ շուտ ջարդվում են։ Ստիպված եմ աշխատել առավոտից մինչև երեկո, նստելու ժամանակ չի լինում անգամ մի կտոր հաց ուտելու, դեռ մի դազգահը կարգի չգցած՝ մյուսն է փչանում։

Ցեխն այնքան կեղտոտ է ու թափթփված, որ եթե որևէ տեղ թղթի մեջ մի կտոր հաց դնեք, խկույն առնետները կթռցնեն։ Հատակին ամենուրեք բլոչներ են վխտում։ Լվացարաններն այնքան են կորել կեղտի մեջ, որ այնտեղ անգամ ձեռք չես կարող լվանալ։

Բանվորներին ծանրաբեռնել են ուժից վեր աշխատանքով։ Այդ պատճառով էլ հաճախ ֆաբրիկա են գալիս մեր ազգականներն ու երեխաները, որպեսզի օգնեն մեզ նորման կատարելու (հասկանալի է, իհարկե, որ դրա համար նրանք ոչ մի վարձատրություն չեն ստանում)։ Մենք մի անգամ փորձեցինք պրոֆմիության մեջ մտնել, բայց ֆաբրիկատերը սպառնաց, որ ինքը ֆաբրիկան կփակի և մենք բոլորս անգործ կմնանք»։

✪ Գազանային շահագործում և անվտանգության տեխնիկայի բացակայություն՝ ահա որն է կապիտալիստական երկրների միլիոնավոր բանվորների խեղանդամության ու

մահացման պատճառը։ Ամերիկյան «էկոնոմիկ աուտլուկ» ժուռնալը վերջերս գրել է, որ ԱՄՆ-ում միջին հաշվով յուրաքանչյուր 16 վայրկյանում մեկ բանվոր արտադրության մեջ տեղի ունեցող դժբախտ դեպքի զոհ է դառնում, յուրաքանչյուր 4 րոպեյում մեկ բանվոր զոհվում է կամ խեղանդամ է դառնում։ Ամեն տարի 2 միլիոնից ավելի բանվորներ դժբախտ դեպքի կամ արտադրության մեջ ստացած պրոֆեսիոնալ հիվանդությունների զոհ են դառնում։

✪ Մանր է ու ողբալի բանվորի կյանքը կապիտալիստական երկրներում, բայց ավելի քան թշվառ է բազմամիլիոն գործազուրկների դրությունը։

«Նրանք,— ասում է ընկեր Ստալինը գործազուրկների մասին,— ամեն օր ձգտում են աշխատանք գտնել, աշխատանք են որոնում, նրանք պատրաստ են ընդունելու աշխատանքի համարյա ամեն պայման, բայց նրանց աշխատանքի չեն ընդունում, որովհետև նրանք «ավելորդ» մարդիկ են։ Եվ այս այն ժամանակ, երբ ապրանքների ու մթերքների հսկայական մասսաներ վատնվում են կապիտալիստների ու կալվածատերերի՝ բախտից փայփայված զավակների քմահաճույքների համար։



Գործազուրկներին մերժում են ուտելիք տալ, որովհետև նրանք ոչինչ չունեն վճարելու ուտելիքի համար. նրանց օթևան չեն տալիս, որովհետև նրանք ոչինչ չունեն վճարելու բնակարանի համար։ Ինչո՞վ և որտե՞ղ են ապրում նրանք։ Նրանք ապրում են աղանների սեղանի փշրանքներով, պեղումներ կատարելով աղբի արկղներում, որտեղ նրանք ուտելիքի նեխված մնացորդներ են գտնում, ապրում են մեծ քաղաքների հետնախորշերում, իսկ ամենից ավելի՝ քաղաքից դուրս, գործազուրկների ձեռքով արկղների տախտակներից ու ծառերի կեղևից շտապ շինված հյուղերում» (Երկեր, հատ. 13, էջ 219—220)։

✪ ԱՄՆ-ում յուրաքանչյուր չորրորդ բանվորը գործազուրկ է կամ կիսագործազուրկ։

Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիայի տվյալներով՝ ԱՄՆ-ում գործազուրկների և մասնակի գործազուրկների թիվը ներկայումս հասնում է ավելի քան 13 միլիոն մարդու, Իտալիայում՝ ավելի քան 5 և կես միլիոնի, Ֆրանսիայում՝ համարյա 3 միլիոնի։ Արևմտյան Գերմանիայում կա մոտ 3 միլիոն գործազուրկ ու կիսագործազուրկ, Ճապոնիայում՝ մոտ 10 միլիոն գործազուրկ ու կիսագործազուրկ։

✪ Կապիտալիստական երկրներում բանվոր դասակարգը կոմունիստական պարտիաների գլխավորությամբ ուժեղացնում է իր պայքարը հանուն հացի և աշխատանքի, հանուն դեմոկրատական ազատությունների և խաղաղության։ Գործադուլային շարժումը լայն թափ ու ծավալ է ստացել։ Հետպատերազմյան առաջին հնգամյակում, 1946—1950 թվականներին, ԱՄՆ-ում գործադուլ են արել 14 միլիոն բանվորներ և ծառայողներ, այսինքն՝ երկուս ու կես անգամ շատ, քան նախապատերազմյան վերջին հնգամյակում։ Այս տարվա հունվարից մինչև հուլիս ամիսը ԱՄՆ-ում տեղի է ունեցել 3150 գործադուլ, որոնց մասնակցել է 2.280 հազար մարդ։ Թե՛ գործադուլների թվով և թե՛ դրանց մասնակիցների թվով ընթացիկ տարվա առաջին կիսամյակը ամենաբարձրն է վերջին հինգ տարում։

✪ Պատերազմի և սովի իմպերիալիստական քաղաքականությունը քայքայում է կապիտալիստական երկրների ոչ միայն բանվոր դասակարգին, այլև գյուղացիությանը։

Այովայի (ԱՄՆ) նահանգի «Ֆերմերների միության» համագումարը իր բանաձևում արձանագրել է.

«Թառացիորեն հարյուր հազարավոր ֆեր-



մերներ ներկայումս կատաստրոֆի եզրին են կանգնած։ Բավական է, որ մի փոքր անբերրիություն լինի, գյուղատնտեսական մթերքների գները մի փոքր իջնեն կամ ընտանիքում որևէ մեկը հիվանդանա՝ ֆիրմերի տնտեսությանը լիակատար քայքայում է սպառնում»։

✪ Միայն վերջին մի քանի տարում ԱՄՆ-ում քայքայվել է ավելի քան 700 հազար ֆերմերական տնտեսություն։ Կորեայում մղվող պատերազմը, ֆերմերների տղաներին բանակ տանելը, գների և հարկերի աճումը արագացրին ֆերմերական տնտեսությունների քայքայումը։ Միայն անցյալ տարվա ապրիլի 1-ից մինչև այս տարվա ապրիլի 1-ը ԱՄՆ-ի գյուղատնտեսությունից դուրս է ընկել ավելի քան մեկ միլիոն մարդ։

✪ Ամերիկյան մայր-կին, հասարակական գործիչ Ռեյ Վեկսլերը ասում է.

«ԱՄՆ-ում շատ երեխաներ սոված են մնում։ Մեր երեխաների մեծամասնության համար միսը մի անհասանելի բան է. երկրում շարունակ պակասում է բնակչության յուրաքանչյուր շնչի համար սպառվող կաթի քանակը։ Մենք համարյա նոր դպրոց չենք կառուցում, որի կարիքը շատ ենք զգում, բայց կառուցում ենք հազարավոր նոր տանկեր։ Դպրոցական շենքերի պակասության

պատճառով 5—17 տարեկան չորս միլիոն երեխաներ 1950 թվականին ամենևին դպրոց չեն հաճախել։ Գարլեմի (Նյու-Յորքի նեգրական ռայոն) մայրերի համար քունը շռայլություն է համարվում։ Երբ երեխաները պառկում են քնելու՝ մայրերը նրանց պաշտպանում են քաղցած առնետներից...»։

✪ ԱՄՆ-ում առնվազն 10 միլիոն ընտանիքներ բնակարանային խիստ կարիքի մեջ են։ Բացի դրանից, առնվազն 5 միլիոն ընտանիքներ ստիպված պատսպարվում են հետնախորշերում և խղճուկ հյուղակներում, որոնք մի ամբողջ ռայոն են կազմում ամերիկյան շատ քաղաքներից ամեն մեկում։ Հարյուր հազարավոր ընտանիքներ այստեղ ապրում են կիսախարխուլ տներում, ջրմուղից և կոյուղուց զուրկ տներում։ «Նյու-Յորքը, — գրում է ամերիկյան «Դեյլի կոմպաս» թերթը,— հանդիսանում է առնետներով պաշարված գարշահոտ հետնախորշերի մի խայտառակ, կեղտոտ կոլեկցիա»։

✪ ԱՄՆ-ի տնատերերը օգտվելով բնակչության բնակարանային սուր կարիքից, շարունակ բարձրացնում են բնակարանավարձը, խլելով բանվորական ընտանիքների վաստակի 25-ից մինչև 40 տոկոսը։

✪ Անգլիայում պարենային ապրանքների գները 1947 թվականից հետո բարձրացել են



60 տոկոսով։ Հոկտեմբերի 5-ին տեղի ունեցավ գների մի նոր խիստ բարձրացում։ Յուղը թանկացավ 25 տոկոսով, մարգարինը՝ 14 տոկոսով, շաքարը՝ 17 տոկոսով, պանիրը՝ 8 տոկոսով և այլն։ Տնատերերը որոշել են բնակարանավարձը բարձրացնել մեկ և կես անգամ։

Անցյալ տարվա դեկտեմբերի սկզբներին Անգլիայում կար 300 հազար գործազուրկ, իսկ ներկայումս նրանց թիվը կես միլիոնից ավելի է։

✪ Անգլիայում, որտեղ մինչև այժմ պահպանվում է քարտային սիստեմը, տարեցտարի կրճատվում են քարտերով բաց թողնըվող մթերքների նորմաները։ Ներկայումս այդ երկրում յուրաքանչյուր մարդու շաբաթական մթերաբաժինը կազմում է՝ միս 4 ունցի (ունցին հավասար է 28,3 գրամի), յուղ՝ 3 ունցի, շաքար՝ մինչև 10 ունցի։ Բայց անգլիական շատ բանվորներ, թանկության պատճառով զուրկ են նույնիսկ այդ չնչին մթերաբաժինը գնելու հնարավորությունից։

✪ «...Ամեն օր ուտելիք պատրաստելով գործարանի հարյուրավոր բանվորների համար, ես դառնությամբ և զայրույթով տեսնում եմ, թե ինչպես սպառազինության մրցավազքը ավելի ու ավելի շատ մթերքներ է խլում նրանց ափսեներից։ Քիչ սնունդ, թե

բարձր գներ՝ ո՞րն եք գերադասում։ Ահա միակ երկընտրանքը, որ բաժին է ընկել մեզ՝ հասարակ մարդկանց»։ Այսպես է գրում Լիվերպուլի գործարանային ճաշարանի բանվորուհի Թերեզա Կեմպբելլը՝ անգլիական «Դեյլի Ուորկեր» թերթում տպված իր նամակում։

✪ Ֆրանսիայում բանվորների ռեալ աշխատավարձը այս տարի նախապատերազմյան աշխատավարձի կեսից էլ պակաս է։ Ֆրանսիական խոշոր կոմպանիաները հետպատերազմյան հինգ տարվա ընթացքում իրենց շահույթներն ավելացրել են 6 անգամ։

✪ Անգլիական ռեակցիոն «Դեյլի մեյլ» թերթը վերջերս հաղորդել է, որ արևմտագերմանական թնդանոթի արքա Ալֆրեդ Կրուպպին է վերադարձվել նրա պալատը։ Կրուպպը, որին ամերիկյան օկուպանտները ազատ են արձակել բանտից, նորից զբաղվում է սպառազինության արտադրությամբ։ «Դեյլի մեյլը» նշում է, որ Ալֆրեդ Կրուպպը իր պալատի 800 սենյակներում երբեմնի ընդունել է Հիտլերին և նրա մերձակիցներին։

Հիտլերյան հանցագործները ետ են ստանում իրենց պալատները, իսկ արևմտա-գերմանական միլիոնավոր գերմանացիներ պատսպարվում են ռումբերից կիսաքանդ եղած տներում, խոնավ նկուղներում և խրղճուկ տնակներում։

---



# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ 30-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

1. Վ. Ի. Լենինը և Ի. Վ. Ստալինը—Սովետական Սոցիալիստական բազմազգ պետության ստեղծողներ և կազմակերպիչներ։

2. Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կազմավորումը՝ լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության մեծ հաղթանակն է։

3. ՍՍՌՄ ժողովուրդների միջև եղած տնտեսական և կուլտուրական անհավասարության լիկվիդացումը՝ սովետական ազգային քաղաքականության նվաճումն է։

4. Սովետական պետության տնտեսական հզորության անընդհատ ամրապնդումը՝ սովետական բոլոր մարդկանց հայրենասիրական պարտքն է։

5. Սովետական պետական կարգը՝ որպես ազգերի խակական իրավահավասարության և համագործակցության օրինակ ամբողջ աշխարհում։

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միություն կազմելու մասին: *(Երկեր 5-րդ հատոր, էջ 175—178)*:

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ՝ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարում: *«Ագիտատորի բլոկնոտ» № 20, 1952 թ.*:

ՀամԿ(բ)Պ պատմություն, Համառոտ դասընթաց, *գլուխ 9-րդ, § 3, էջ 354—362, գլուխ 12-րդ, § 3, էջ 467—473*:

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, 1952 թ*:

Լ. Պ. ԲԵՐԻԱ.— Ճառ՝ ՀամԿ(բ)Պ 19-րդ համագումարում: *Հայպետհրատ, 1952 թ.*:

## II

## ԽՆԱՅՈՂՈՒԹՅԱՆ ՌԵԺԻՄԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ՎԵՐԵԼՔԻ ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ԼԾԱԿՆ Է

*1. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացումը իրականացվում է սեփական ռեսուրսների հաշվին, կուտակման ներքին աղբյուրների հաշվին*:



*2. Արտադրանքի ինքնարժեքի սիստեմատիկաբար իջեցումը հանդիսանում է կուտակման կարևորագույն աղբյուրը*:

*3. Կորուստների և խոտանի դեմ պայքարելը, նյութական, դրամական և աշխատանքային ռեսուրսների խնայողաբար ծախսումը, սոցիալիստական սեփականության նկատմամբ անդուլ հոգատարությունը՝ բոլոր աշխատավորների պարտականությունն է*:

*4. Աշխատանքի արտադրողականության անընդհատ աճը, մեքենաները և սարքավորումները լրիվ կարողությամբ օգտագործելը հանդիսանում են թողարկվող արտադրանքի էժանացման կարևոր աղբյուրը*:

*5. Ինչպես է մեր ձեռնարկությունում իրագործվում խնայողության ռեժիմը*:

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, 1952 թ.*:

Մ. ՍԱԲՈՒՐՈՎ— Զեկուցում պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվների մասին ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ: *Հայպետհրատ, 1952 թ.*:

«Ուժեղացնել պայքարը անտնտեսվարության դեմ»: *(«Ս. Հ.», 1952 թ. նոյեմբերի 22-ի առաջնորդողը)*:

## III

## ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ԵՎ ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ ՀԱՆՐԱՅԻՆ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ԳԼԽԱՔԱՆԱԿԻ ՀԵՏԱԳԱ ԱՎԵԼԱՑՄԱՆ ԵՎ ՄԻԱԺԱՄԱՆԱԿ ՆՐԱՆՑ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

*1. Հանրային անասունների գլխաքանակը ավելացնելը, միաժամանակ նրանց մթերատվությունը զգալիորեն բարձրացնելը՝ հանդիսանում է անասնապահության զարգացման գլխավոր խնդիրը։*

*2. Հանրային անասունները լրիվ և ժամանակին ապահովել կերով, սահմանել խիստ հաշվառում և խնայողություն անասնակերի ծախսման գործում՝ այս է յուրաքանչյուր կոլտնտեսության խնդիրը։*

*3. Անասնապահության բնագավառում աշխատողների պարտականությունն է սիստեմատիկորեն բարձրացնել իրենց զոոտեխնիկական գիտելիքները, ընդօրինակել անասնապահների լավագույն աշխատանքի փորձը։*

*4. Անասունների անկման դեմ պայքարելը, կոլտնտեսություններում և սովխոզներում բարձր մթերատու անասունների ցեղեր զարգացնելը և հանրային անասունների խնամքն ամեն կերպ բարելավելը՝ սոցիալիստական անասնաբուծության աշխատողների սրբազան պարտքն է։*



*5. Լայնորեն ծավալել սոցիալիստական մրցություն պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվները անասնապահության զարգացման բնագավառում կատարելու և գերակատարելու համար։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, 1952 թ.։*

Մ. ՍԱԲՈՒՐՈՎ— Զեկուցում պարտիայի 19-րդ համագումարի դիրեկտիվների մասին ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ: *Հայպետհրատ, 1952 թ.։*

ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Հաշվետու զեկուցում Հայաստանի Կ(բ)Պ XVI համագումարում ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: Հայպետհրատ, 1952 թ.:



# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.*

Ն. ՇՉԵԴՐԻՆ.— Ընտիր երկեր: *Հատոր երրորդ, 387 էջ, գինը 6 ռ. 90 կոպ.։*

ՍՏԵՖԱՆ ՀԵՅՄ.— «Խաչակիրներ»: *707 էջ, գինը 13 ռ. 55 կոպ.։*

ԳԱՐԵԳԻՆ ՍԵՎՈՒՆՑ.— «Թեհրան»: *Առաջին հատոր, 467 էջ, գինը 9 ռ. 25 կոպ.։ Երկրորդ հատոր, 599 էջ, գինը 10 ռ. 50 կոպ.։*

Լ. ԿՈՍՄՈԴԵՄՅԱՆՍԿԱՅԱ.—«Պատմվածք Զոյայի և Շուրայի մասին»: *277 էջ, գինը 5 ռ.։*

ՂԵՎՈՆԴ ԿՈՄՈՒՆԻ.— «Ախուրյան»: *297 էջ, գինը 6 ռ. 40 կոպ.։*

Հ. ԴԻԼԱՆՅԱՆ.— «Պաղատու այգու մշակությունը»: *123 էջ, գինը 1 ռ. 60 կոպ.։*

Գ. ՔԱՄԱԼՅԱՆ.— «Վիտամինները և գյուղատնտեսական կենդանիների ավիտամինոզ հիվանդությունները»: *62 էջ, գինը 60 կոպ.։*

---

Իտ. խմբագրի՝ Մ. Տ. ՔՈՉԱՐՅԱՆ

Отдел Пропаганды и агитации ЦК КП
Армении
БЛОКНОТ АГИТАТОРА

№ 23 1952 г.

*ՎՖ 07945 Պատվեր 1017 Տիրաժ 9220*

---

*Հայպոլիգրաֆհրատի II տպարան, Երևան,
Կնունյանցի փ. № 8*

ԳԻՆԸ 50 ԿՈՊ

# ԲԱՑՎԱԾ Է „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի 1953 ԹՎԻ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունն ընդունվում է Սոյուզպեչատի և փոստի բոլոր բաժանմունքներում, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկություններում, ֆաբրիկա-գործարաններում, ուսումնական հիմնարկներում, սովխոզներում և կոլտնտեսություններում, մամուլի հասարակական լիազորների մոտ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**12 ամիսը 24 համարը — 12 ռուբլի**
**6 ամիսը 12 „ — 6 „**
**3 ամիսը 6 „ — 3 „**
**Մեկ համարը — 50 կոպեկ**

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**